## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



—O—

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

# ՀԱՑԱՄԹԵՐՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Կոլտնտեսային դաշտերում լայնորեն ծավալվել են բերքահավաքի աշխատանքները։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղի աշխատավորները, ՄՏ կայանների բանվորներն ու բանվորուհիները, գյուղատնտեսության ֆրոնտի մասնագետները, իրենց աշխատանքի հիմքում դնելով Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարի որոշումը՝ 1951 թվականը գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատվության տարի դարձնելու վերաբերյալ, առատ բերք են աճեցրել։*

*Սովետական Հայաստանի սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հուժկու վերելքի կազմակերպման գործում բացառիկ նշանակություն ունի ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ընդունված ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի՝ «Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում ցորենի և բամբակի արտադրությունը ավելացնելու, խոզերի և թռչունների գլխաքանակն ավելացնելու և հանրային անասնա-*

քուծության մթերատվությունը բարձրացնելու միջոցառումների վերաբերյալ» որոշումը։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի այդ որոշման մեջ ցույց է տրված, որ Հայկական ՍՍՌ-ում բոլոր անհրաժեշտ պայմանները կան ամենամոտիկ տարիներին լուծելու ցորենի արտադրության ավելացման խնդիրը՝ հացի պահանջը սեփական արտադրության հաշվին ապահովելու համար։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսային գյուղի աշխատավորները արդեն առաջին լուրջ քայլերն են կատարել այդ ծրագրային որոշումն իրականացնելու նպատակով։ Միայն այս տարի ցորենի ցանքերի տարածությունը նրանք ավելացրել են 27 տոկոսով, իսկ կերի կուլտուրաներինը՝ 23 տոկոսով։ Ավելացել է նաև խոտհարքների և բազմամյա խոտաբույսերի տարածությունը։

Բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարության շնորհիվ, այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները, սովխոզներն ու ՄՏԿ-ները հագեցվել են նոր հարյուրավոր կոմբայներով, կալսիչներով և ժամանակակից գյուղատնտեսական առաջավոր մեքենաներով։ Գնալով օրը օրին բերքահավաքի ճակատն ավելի է ծավալվում,



նախալեռնային ու լեռնային շրջանները նույնպես ձեռնամուխ են եղել բերքահավաքի աշխատանքներին։ Կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողները, գյուղի մեխանիզատորները, սոցիալիստական մրցության դուրս գալով՝ պայքարում են սեղմ ժամկետում և բարձր որակով ավարտելու ընթացիկ տարվա բերքահավաքը և պատվով կատարելու հացամթերումները։ Կոլտնտեսային գյուղի բոլշևիկները, մոբիլիզացնելով աշխատավորության ուժերը, յուրաքանչյուր կոլտնտեսականի, տրակտորիստի, կոմբայնավարի, կալսիչավարի, գյուղատնտեսության բնագավառի աշխատողի գիտակցությանն են հասցնում ընկեր Ստալինի ցուցումներն այն մասին, որ «Բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում։ Բերքը ժամանակին հավաքեցիր՝ կշահես, ուշացրիր բերքահավաքը՝ տանուլ կտաս»։

Բերքահավաքի կամպանիայի ընթացքում բացառիկ կարևոր նշանակություն ունեն հացամթերումները։ Հացը մեր սոցիալիստական Հայրենիքի հզորությունն է, Սովետական պետության ուժը, ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման աղբյուրը։ «... Մի շեղվեք գլխավոր խնդրից,—

նախազգուշացրել է ընկեր Ստալինը,— ծավալեցեք հացամթերումները բերքահավաքի առաջին իսկ օրերից և արագացրեք դրանք, որովհետև առաջին պատվիրանը հացամթերումների պլանը կատարելն է...»: Ստալինյան խոսքերը բերքահավաքի այս եռուն օրերին բազմապատկում են սոցիալիստական դաշտերի աշխատավորների ուժերը, նրանց մղում աշխատանքային նորանոր սխրագործությունների՝ խաղաղության առատ բերքը սեղմ ժամկետում և առանց կորուստի հավաքելու, հարազատ պետության առջև ունեցած պարտավորություններն անթերի կատարելու համար:

Առաջին պատվիրանը՝ հացամթերումներն օրինակելիորեն կատարելը՝ սովետական գյուղացիությունը համարում է պատվի և փառքի գործ: Սովետական պետության շահերն ամեն բանից բարձր են: Դրա վառ արտահայտություններից է սովետական հայրենասերների այն հրաշալի նախաձեռնությունը, որ ամեն տարի առաջին կալից բարձրորակ հացահատիկ է հանձնվում պետությանը: Օր ու գիշեր հացահատիկով բարձված գնացքներն ու ավտոշարասյունները սոցիալիստական դաշտերից հացահատիկ են տեղափոխում մթերակայանները: Սովետա-



կան Միության շատ երկրամասեր, մարզեր ու ռեսպուբլիկաներ արդեն զեկուցում են ժողովուրդների մեծահանճար առաջնորդ, խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինին այս տարվա հացամթերումների հաջող կատարման մասին: Մեր մեծ Հայրենիքում ընթացիկ տարվա հացամթերումները առաջինը կատարեցին Կրասնոդարի երկրամասի աշխատավորները: Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողները, գյուղատնտեսության մասնագետները, պատվով կատարելով ընկեր Ստալինին տված խոստումը, 1951 թվականի հուլիսի 25-ին կատարեցին հացամթերումների պետական պլանը (առանց եգիպտացորենի և բրնձի) 100,8 տոկոսով, այդ թվում ցորենի պլանը՝ 101,5 տոկոսով: Նրանք 1950 թվականի համեմատությամբ այս տարի պետությանը 15 միլիոն 430 հազար փութ ավելի հացահատիկ են հանձնել, իսկ ցորեն հանձնել են 12 միլիոն 151 հազար փթով ավելի:

Հացամթերումների հաջող կատարման մասին ընկեր Ստալինին արդեն զեկուցել են Ստավրոպոլի երկրամասի, Ղրիմի, Նիկոլաևի, Դնեպրոպետրովսկի և ուրիշ շատ երկ-

ռամասերի ու մարզերի և Մոլդավական ՍՍՌ-ի աշխատավորները։

Բերքահավաքի առաջին իսկ օրերից հացամթերումները հաջող են ընթանում նաև Սովետական Հայաստանի կոլտնտեսություններում։ Հացամթերումներն արդեն կատարել են Բերիայի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Կոտայքի, Շամշադինի, Իջևանի և այլ շրջաններ։ ՍՍՌՄ Մթերումների մինիստրության Հայկական ՍՍՌ Լիազորության տվյալներով ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները հացամթերումների հուլիս ամսվա պլանը կատարել են 116,5 տոկոսով։

Հացամթերումների ժամանակին կատարման գործում մեծ անելիքներ ունեն ագիտատորները։ Նրանք պարտավոր են իրենց ամենօրյա քաղաքական զրույցների և մասսայական աշխատանքի միջոցով աշխատավորներին պարզաբանել հացամթերումների տնտեսական, քաղաքական նշանակությունը, ցույց տալ, որ հացը պետության ուժն է, որ բերքահավաքը սեղմ ժամկետում և բարձր որակով ավարտելով, էլ ավելի ենք ուժեղացնում խաղաղության գործը։ Հացամթերումները կատարած շրջանների ագիտկոլեկտիվների և ագիտատորների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ որքան



բարձր է աշխատավորների մեջ կատարվող քաղաքական-մասսայական և կուլտուր-լուսավորական աշխատանքը, այնքան մեծ են հաջողությունները։ Աշտարակի շրջանի Եղվարդ, Օշական, Ոսկեվազ, Կոշ և այլ գյուղերի ագիտատորները բերքահավաքի ընթացքում խոշոր օգնություն են ցույց տալիս սկզբնական պարտիական կազմակերպություններին։ Նրանք կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների համար կազմակերպել են զրույցներ՝ «Ժամանակին և անկորուստ հավաքենք խաղաղության բերքը», «Հացը մեր պետության ուժն է», «Առաջին պատվիրանը» և այլ թեմաներով։

Բերքահավաքը և հացամթերումները սեղմ ժամկետում ավարտելու առթիվ ծավալված սոցիալիստական մրցության ընթացքում իրենց անձնական օրինակով աչքի են ընկում շատ ու շատ ագիտկոլեկտիվներ։ Բայց բանն այն է, որ ոչ բոլոր կոլտնտեսությունների ագիտատորներն են այս օրերին անհրաժեշտ քաղաքական-մասսայական աշխատանք կատարում բերքը կորուստներից պահպանելու, հացամթերումները ժամանակին կատարելու համար։ Վեդու, Ղափանի, Նոյեմբերյանի շրջանների շատ կոլտնտեսություններում ագիտատորները թուլացրել են քաղաքական-

մասսայական աշխատանքը, որի պատճառով էլ տեղիք է տրվում բերքի կորուստների և ձգձգվում են հացամթերումները։

Հացամթերումների ընթացքում պետք է սկզբից և եթ հատուկ ուշադրություն նվիրել բարձրորակ սերմացուի առանձնացմանը, մի բան որն անտեսվում է առանձին շրջաններում։

Հացամթերումները տնտեսական-քաղաքական կարևորագույն գործ է։ Հացամթերումները քաղաքական քննություն է նաև բոլշևիկյան ագիտատորների համար։

Օրինակելիորեն կատարել հացամթերումները, այդ ոչ միայն նշանակում է ապահովել հացահատիկի հանձնումը սահմանված ժամկետին, այլև պետությանը հանձնել բարձրորակ հացահատիկ։

Բոլշևիկյան ագիտատորների մարտական խնդիրն է՝ ամեն կերպ նպաստել բերքահավաքի սեղմ ժամկետում ավարտմանը ու հացամթերումների ժամանակին կատարմանը և դրանով իսկ պայմաններ ստեղծել մեր սոցիալիստական Հայրենիքի նոր ծաղկման և բարգավաճման համար։

—∞—



# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔՈՒՄ

Հրապարակվել է ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ Հաղորդագրության մեջ բերված թվերը վառ կերպով ցույց են տալիս ՍՍՌ Միության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ աճը։

1951 թվականի առաջին կիսամյակը նշանավորվեց նորանոր հաջողություններով՝ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման եռամսյա պլանը՝ ամբողջությամբ վերցրած, կատարվել է 104 տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1951 թվականի երկրորդ եռամսյակում, 1950 թվ-

վականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, աճել է 16 տոկոսով։

Արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի արտադրողականությունը 1951 թվականի երկրորդ եռամսյակում, 1950 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, բարձրացել է 10 տոկոսով։ 1951 թվականի երկրորդ եռամսյակի համար սահմանված՝ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը գերակատարված է։

1951 թվականի բերքի համար կատարված գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է, նախնական տվյալների համաձայն, 6 միլիոն հեկտարով։ Առավել արժեքավոր պարենային կուլտուրայի՝ ցորենի ցանքատարածությունն ավելացել է ավելի քան 4 միլիոն հեկտարով, բամբակենու ցանքատարածությունը՝ մոտ 400 հազար հեկտարով։ Աճել է նաև շաքարի ճակնդեղի և տեխնիկական մյուս կուլտուրաների ցանքատարածությունը։

Սոցիալիստական արտադրության անշեղ աճը քաղաքում և գյուղում՝ ապահովում է աշխատավորների նյութական բարեկեցության սիստեմատիկ վերելքը, նրանց կեն-



սամակարդակի բարձրացումը։ Այդ են վկայում Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրության մեջ բերված տվյալները՝ ապրանքաշրջանառության աճման մասին։

1951 թվականի երկրորդ եռամսյակում շարունակվում էր սովետական առևտրի էլ ավելի ծավալումը։ Բնակչությանը պետական և կոոպերատիվ առևտրի գծով, համադրելի գներով, 14 տոկոսով ավելի շատ ապրանք է վաճառվել, քան 1950 թվականի երկրորդ եռամսյակում։ Ընդսմին միս ավելի է վաճառվել 17 տոկոսով, ճարպեղեն՝ 11 տոկոսով, կաթ և կաթնամթերքներ՝ 53 տոկոսով, կահույք՝ 28 տոկոսով, հեծանիվներ՝ 43 տոկոսով, պատեֆոններ՝ 26 տոկոսով, ֆոտոապարատներ՝ 65 տոկոսով և այլն։

1951 թվականի երկրորդ եռամսյակում, 1950 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է նաև կոլտնտեսային շուկաների միջոցով բնակչությանը վաճառված գյուղատնտեսական մթերքների քանակը։

Ինչպես հետպատերազմյան հնգամյակի տարիներին, արագ տեմպերով զարգանում է մեր սոցիալիստական արդյունաբերությունը։ Դրանով իսկ ամրապնդվում և ընդ-

լայնվում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հաջողությունների հիմքը, սոցիալիստական արտադրության էլ ավելի աճման հիմքը՝ քաղաքում և գյուղում։

Այն ժամանակ, երբ մեր երկրում տեղի է ունենում ժողովրդական տնտեսության, աշխատավորների կենսամակարդակի անշեղ վերելք, կապիտալիստական երկրներում, սպառազինության տենդագին մրցավազքի հետևանքով կրճատվում է քաղաքացիական արտադրանքի թողարկումը, անզուսպ կերպով բարձրանում են մանրածախ գները, օրեցօր ընկնում է բնակչության գնողունակությունը։

Ժողովրդական տնտեսության զարգացման 1951 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանը հաջողությամբ կատարեց նաև Հայկական ՍՍՌ-ն։

Ռեսպուբլիկայի տերիտորիայում գտնվող արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման 1951 թվականի երկրորդ եռամսյակի պլանը կատարվել է 108 տոկոսով։ Հայկական ՍՍՌ-ում գտնվող ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1951 թվականի երկրորդ եռամսյակում, 1950 թվականի երկրորդ եռամսյակի համեմատությամբ, աճել է 18 տոկոսով։



Համախառն արտադրանքի արտադրության 1951 թվականի երկրորդ եռամսյակի արտադրական պլանը զգալիորեն գերակատարել են հատկապես Սննդի, Կաթնեղենի-մըսեղենի, Թեթև, Շինանյութերի, Տեղական, Անտառային արդյունաբերության, Սոցիալական ապահովության մինիստրությունների ձեռնարկությունները։ Արդյունաբերական ձեռնարկությունները զգալի չափով գերակատարել են արտադրանքի այնպիսի կարևոր տեսակների արտադրության պլանները, ինչպիսիք են՝ էլեկտրալիտային պղինձը, էլեկտրաէներգիան, կարբիդը, ավտոդողերը, գեներատորները, հիդրոտուրբինները, կոմպրեսորները, պոմպերը, բարիտը, պեմզան և այլն։

Զգալի հաջողություններ են ձեռք բերված սոցիալիստական գյուղատնտեսության ասպարեզում։ Այս տարվա գարնանային գյուղատնտեսական աշխատանքները ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի լավ կատարեցին, քան անցյալ տարի։ Ամենուրեք գարնանացանն զգալի չափով շուտ կատարվեց, քան անցյալ տարի։ Ցորենի ցանքատարածությունն ընդարձակվեց 27 տոկոսով, իսկ կերա-

բույսերինը՝ 23 տոկոսով։ Բարձրացավ գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը։ Ռեսպուբլիկայի ՄՏԿ-ների տրակտորային պարկի կարողությունը, մինչև 1950 թվականի հուլիսի 1-ը եղածի համեմատությամբ, աճեց 51 տոկոսով, իսկ ՄՏԿ-ների կողմից կատարվող աշխատանքների ծավալը՝ 31 տոկոսով։ Ռեսպուբլիկայի ՄՏԿ-ները 1951 թվականի առաջին կիսամյակի աշխատանքների պլանը կատարել են 147 տոկոսով։

Բայց սովետական ժողովրդին հատուկ չէ բավարարվել ձեռք բերվածով։ Նրա ուշադրությունը բևեռված է այն խնդիրների վրա, որ պետք է լուծել առաջիկայում։ Նա ձգտում է այն բանին, որ հայտաբերի և օգտագործման մեջ դնի նորանոր ռեզերվներ՝ սոցիալիստական արտադրության էլ ավելի աճման համար։

Հանրագումարի բերելով առաջին հնգամյակի արդյունքները, մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը նշեց, որ մեր այդ պատմական հաղթանակն ապահովող հիմնական ուժը՝ դա, նախ և առաջ, միլիոնավոր



մասսաների ակտիվությունն ու անձնվիրությունն էր, խանդավառությունն ու ձեռներեցությունը, մասսաներ, որոնք հսկայական էներգիա ներդրեցին սոցիալիստական մրցության ու հարվածայնության ծավալման գործում։ «Տարակույս չի կարող լինել,— ասում է ընկեր Ստալինը,— որ առանց այդ հանգամանքի մենք չէինք կարողանա նպատակի հասնել, չէինք կարողանա ոչ մի քայլ առաջ շարժվել»։

Մեծ Ստալինի այդ իմաստուն ցուցումը վառ կերպով լուսավորում է սովետական ժողովրդի ուղին՝ դեպի կոմունիստական շինարարության նորանոր հաջողությունները։

—∞—

# ՄԵՐ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ

Արտադրական ձեռնարկությունների պլանների կատարմանը և գերակատարմանը մեծ չափով նպաստում է ագիտացիոն-մասսայական աշխատանքի նպատակասլաց կազմակերպումը։ Այդ կարելի է ցույց տալ Երևանի Ավտոդողերի գործարանի ագիտատորների հաջող աշխատանքի օրինակով։

Գործարանի ագիտկոլեկտիվն ընդգրկում է 33 մարդ, որոնք սիստեմատիկաբար քաղաքական զրույցներ են անցկացնում գործարանի բոլոր ցեխերում և տեղամասերում։ Նրանք իրենց զրույցները սերտորեն կապում են տվյալ ցեխի, տեղամասի արտադրական խնդիրների հետ, մոբիլիզացնում բանվորների և ծառայողների ուժերը պլանների կատարման ու գերակատարման, նոր, էլ ավելի բարձր պարտավորություններ ստանձնելու համար։

Ագիտատորներին օգնում և գործնական կերպով ղեկավարում է գործարանի պարտ-



բյուրոն։ Ագիտատորների համար յուրաքանչյուր երկուշաբթի հրավիրվում է սեմինար պարապմունք, որտեղ տրվում են հրահանգչական զեկուցումներ։

Յուրաքանչյուր ամսվա ագիտացիոն աշխատանքի թեմատիկ պլանում ընդգրկված է լինում 4—5 թեմա, սակայն ագիտատորները չեն սահմանափակվում դրանով և զրույցների ժամանակ բանվորներին ու ծառայողներին ծանոթացնում են միջազգային դրության, մեր սոցիալիստական Հայրենիքի ներքին կյանքի, կոմունիզմի մեծ կառուցումների, ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա զարգացման հրատապ հարցերի հետ։

Ավտոդողերի գործարանի ագիտատորների սիստեմատիկ և մտածված աշխատանքը մեծ չափով նպաստեց 1951 թվականի առաջին կիսամյակի արտադրական պլանների կատարմանն ու գերակատարմանը։ Գործարանն առաջին կիսամյակի պլանը կատարեց 109,6 տոկոսով։ Առանձին ցեխեր հասան ավելի լավ արդյունքների։ Օրինակ, նախապատրաստական ցեխը պլանը կատարեց 107,5 տոկոսով, կալանդրների ցեխը՝ 105,1 տոկոսով։ Նախապատրաստական ցեխը, որտեղ ագիտացիոն աշխատանք է կատարում գործարանի լավագույն ագիտատոր

ընկ. Ա. Հարությունյանը, 6 ամիս իր ձեռ-
քումն էր պահում գործարանի փոխանցիկ
կարմիր դրոշը։

Իրենց լավագույն աշխատանքով աչքի են
ընկնում ագիտատորներ՝ Օ. Կալաշյանը, Կ.
Խոջոյանը, Ն. Նեոլինան և ուրիշները։

Ո՞րն է ուշագրավն այդ ագիտատորների
աշխատանքում։ Այն, որ նրանք զրույցների
հիմնական թեմաներին զուգընթաց՝ մասսա-
յականացնում և տվյալ ցեխի արտադրական
կոնկրետ պայմաններում արմատավորում են
աշխատանքի առաջավոր մեթոդները, գոր-
ծարանի բանվորների և ծառայողների նորա-
րարությունները, սոցմրցությանը հաղոր-
դելով նոր թափ։ Ագիտացիոն զրույցների
ընթացքում ագիտատորները հանգամանո-
րեն կանգ են առնում նախորդ օրվա աշխա-
տանքներում տեղ գտած թերությունների
վրա և մշակում դրանց վերացման ուղիները։

Այսպես, նախապատրաստական ցեխում
կշռավարն արտադրանքի ստացման տեխնո-
լոգիական պրոցեսում թույլ էր տվել սխալ,
որի հետևանքով ստացվեց խոտան արտա-
դրանք։ Հաջորդ օրը ագիտատոր Հարություն-
յանն այդ մասին հանգամանորեն խոսեց ա-
գիտացիայի ժամին։ Հարցի բազմակողմանի
քննարկման շնորհիվ այդ թերությունը վե-



րացվեց և հերթափոխը սկսեց տալ բարձրո-
րակ արտադրանք։

Կալանդրների ցեխում արտադրանքի տեխ-
նոլոգիայի պրոցեսում թույլ էր տրվել տևո-
ղության խախտում, որի հետևանքով ստաց-
վեց ցածրորակ արտադրանք։ Ագիտատոր
Օ. Կալաշյանն ագիտացիայի ժամին մանրա-
մասն վերլուծեց այդ երևույթը։ Ագիտացիոն
զրույցի ժամանակ ունկնդիրները նշեցին, որ
ցածրորակ արտադրանք ստացվել է այն
պատճառով, որ պահանջվող պրոցեսը 10
րոպեի փոխարեն, տևել է 8 րոպե։ Վեր հան-
վեց դրա պատճառները և նշվեց բացը վե-
րացնելու միջոցը։ Հաջորդ հերթափոխում
ստացվեց բարձրորակ արտադրանք։ Ագի-
տատորը, զրույցը հաջող կապելով արտա-
դրական կոնկրետ հարցի հետ, զգալիորեն
նպաստեց արտադրանքի որակի բարելավ-
մանը։

Գործարանի ագիտատորները չեն հան-
գըստանում ձեռք բերած հաջողություններով։
Նրանք իրենց առջև խնդիր են դրել՝ ագի-
տացիոն-մասսայական աշխատանքների նոր
վերելքի միջոցով մոբիլիզացնել գործարանի
կոլեկտիվը՝ արտադրական նորանոր հաջո-
ղությունների հասնելու համար։

Հուլիսի 18-ին հրապարակված Երևան քա-

ղաքի Ստալինյան ռայոնի բանվորների, ին֊ժեներների, տեխնիկների և ծառայողների դի֊մումն՝ ուղղված Սովետական Հայաստանի արդյունաբերության և տրանսպորտի բոլոր բանվորներին, ինժեներներին և ծառայող֊ներին, կոչ է անում է՛լ ավելի լայնորեն ծա֊վալել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը 1951 թվականի արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու, ար֊տապլանային արտադրանք թողարկելու, ո֊րակը բարելավելու, ինքնարժեքն իջեցնելու, գիտության ու տեխնիկայի նվաճումները լա֊վագույն կերպով օգտագործելու, կոմունիզմի կառուցումների պատվերները ժամկետից շուտ և որակով կատարելու համար։

Այդ դիմումը քննության առնվեց գործա֊րանի կոլեկտիվի ընդհանուր ժողովում, որ֊տեղ ջերմ ելույթներ ունեցան բանվորները ու ինժեներա-տեխնիկական կազմի աշխա֊տողները և կոնկրետ առաջարկություններ արին՝ սոցիալիստական մրցության ծավալ֊ման միջոցով նոր արտադրական հնարավո֊րություններ որոնել՝ ռեզերվներն օգտագոր֊ծելու, հումքի խնայողություն տալու, ար֊տադրանքի ինքնարժեքն իջեցնելու ուղղու֊թյամբ։

Գործարանի կոլեկտիվը պարտավորվեց՝



ծավալելով սոցմրցությունը՝ տարեկան պլա֊նը կատարել նոյեմբերի 29-ին, տալով 10 միլիոն ռուբլու արտապլանային արտա֊դրանք, աշխատանքի արտադրողականու֊թյունը բարձրացնել 5 տոկոսով, ինքնարժեքն իջեցնել 2 տոկոսով, կրճատել էլեկտրաէներ֊գիայի ծախսումը, լրիվ կոնվեյերիզացիայի ենթարկել գործարանի աշխատանքը։

Ավտոդողերի գործարանի ագիտատորնե֊րը, մասսայականացնելով դիմումը, ցեխե֊րում կազմակերպեցին բանվորների և ծա֊ռայողների սոցիալիստական մրցությու֊նը։ Դիմումը մասսայականացնելու ագիտա֊ցիոն ժամին ագիտատոր Ա. Հարությունյա֊նը ցեխի բանվորներին և ինժեներա-տեխնի֊կական կազմին մանրամասն բացատրեց, թե ինչպիսի մեծ նշանակություն ունի նրանց յուրաքանչյուրի ստանձնած պարտավորու֊թյան կատարումը գործարանի ընդհանուր պլանի կատարման գործում։

Կալանդրների ցեխում ագիտատոր Ս. Դանիելյանը միաժամանակ հերթափոխի պետ է։ Նա ագիտացիոն զրույցների ընթաց֊քում լայնորեն մասսայականացնում է աշ֊խատանքի առաջավոր մեթոդները։ Կալանդր֊ների ցեխը սոցմրցության մեջ է մտել գոր֊ծարանի մյուս ցեխերի հետ։ Աշխատանքի

*արագացված մեթոդներ կիրառելու շնորհիվ, Ս. Դանիելյանի հերթափոխը նախատեսված 5000 գծային մետր ռեզինապատված կորդի փոխարեն տալիս է 7000—7500 գծային մետրը։*

*Նախապատրաստական ցեխում, որը գործարանի հիմնական արտադրական ցեխերից մեկն է, ընկ. Խ. Ղազարյանը պարտավորություն ստանձնեց՝ ծավալելով սոցմրցությունը, օրվա առաջադրանքները կատարել 120—125 տոկոսով, չտալ խոտան արտադրանք և տարեկան պլանը կատարել մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 7-ը։ Նույնպիսի պարտավորություններ են ստանձնել նաև Խ. Նազարյանը, Ն. Ադամյանը, Ն. Ասլանյանը, Մ. Մկրտչյանը և ուրիշներ։*

*Բարձր պարտավորություններ ստանձնողների աշխատանքի առաջավոր փորձն ագիտատորները լայնորեն մասսայականացնում են ցեխերում, դրանով նպաստելով սոցմրցության լայն ծավալմանը։ Այս գործում նրանց մեծապես օգնում են «կայծակ» թերթիկները։*

*Գործարանի ագիտատորները զրույցների ընթացքում բանվորների և ինժեներա-տեխ-*



*նիկական աշխատողների ուշադրությունը կենտրոնացնում են այն բանի վրա, որ անհրաժեշտ է սոցիալիստական մրցության լայն ծավալմամբ ոչ միայն կատարել, այլև գերակատարել ստանձնած պարտավորությունները, որոնել նոր արտադրական հնարավորություններ, օգտագործել բոլոր ռեզերվները, ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունն ու լավացնել արտադրանքի որակը։*

*Այժմ Ավտոդողերի գործարանի ագիտատորների առջև կանգնած են նոր, պատասխանատու խնդիրներ։ Գործարանն սկսել է յուրացնել արտադրական նոր տեխնոլոգիա, որը լայն հնարավորություններ է ստեղծում արտադրանքի քանակական և որակական ցուցանիշների բարձրացման համար։*

*Գործարանի ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ նպատակասլաց, բովանդակալից զրույցներով ծավալել սոցիալիստական մրցությունը, մոբիլիզացնել ամբողջ կոլեկտիվի ուժերը՝ վերցրած պարտավորությունները պատվով կատարելու համար։*

*Վ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

Երևանի Ավտոդողերի գործարանի
պարտկաբինետի վարիչ

—o—

# ԻՄ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

*Բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության որոշմամբ առաջիկա մի քանի տարիների ընթացքում մեր ռեսպուբլիկան պետք է իր սեփական հացով ապահովի բնակչության պահանջը։ Այդ նպատակով ընդարձակվում են ցորենի ցանքատարածությունները, աշխատանքներ են կատարվում բերքատվությունը զգալի չափով բարձրացնելու համար։*

*Հացահատիկի արտադրանքը ավելացնելու համար հսկայական նշանակություն ունի նաև կոլտնտեսականների մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքը, որը հատկապես այս օրերին, երբ հավաքվում է հացահատիկի բերքը, պետք է դրված լինի արժանի բարձրության վրա։ Որքան գործուն ու բովանդակալից լինի ագիտացիոն-մասսայական աշխատանքը, այնքան հաջող կընթանա բերքահավաքը։ Այդ ես կարող եմ ցույց տալ իմ աշխատանքի փորձով։*

*Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմա-*



*կերպությունը բերքահավաքի նախօրյակին համալրեց ագիտկոլեկտիվի կազմը և կոլտնտեսության բոլոր բրիգադները ու մյուս տեղամասերը ապահովեց ագիտատորներով։ Ինձ հանձնարարվեց ագիտացիոն-աշխատանք կատարել կոլտնտեսության № 14 բրիգադում։*

*Բերքահավաքը սկսվելուց երեք օր առաջ ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Բ. Մկրտչյանը ագիտկոլեկտիվի խորհրդակցություն հրավիրեց և պարզաբանեց, թե ինչպիսի թեմաների շուրջը զրույցներ պետք է ունենալ դաշտում աշխատողների հետ, ինչպես կազմակերպել սոցիալիստական մրցությունը, առաջավորների փորձի մասսայականացումը, «իլյիշովկա»-ներ լույս ընծայելու գործը և այլն։*

*Կոլտնտեսականների հետ ես զրույց ունեցա հնձի հենց առաջին օրը։ Զրույցն սկսեցի ընկեր Ստալինի հուշակավոր խոսքերով. ընկեր Ստալինը ասել է,— հաղորդեցի ես հնձվորներին,— որ «Բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում։ Բերքը ժամանակին հավաքեցիր՝ կշահես, ուշացրիր բերքահավաքը՝ տանուլ կտաս»։ Այնուհետև ես հնձվորներին բացատրեցի մեր կոլտնտեսության բերքահավաքի առանձնահատկու-*

թյունները։ Եղվարդի ցորենի ցանքատարածությունը շատ մեծ է՝ 2.800 հեկտար. այդ ամբողջ տարածության վրա բերքը հասունանում է միաժամանակ, հետևապես մեր կոլտնտեսականները պետք է շատ լարված աշխատեն, որպեսզի ժամանակին հավաքենք բերքը և կորուստ չտանք։ Այս ճշմարտությունը բրիգադի կոլտնտեսականները ընդունեցին գոհունակությամբ և խոսք տվեցին՝ ամեն օր գերակատարել արտադրական նորմաները։ Զրույցից հետո մի քանի րոպե էլ զբաղվեցինք ընթերցանությամբ, կարդացի օրվա թերթերում տպագրված թարմ լուրերը։

Հաջորդ օրը հնձվորները դաշտ եկան դեռ լույսը չբացված։ Նրանք աշխատում էին եռանդով, ոչ մի րոպե իզուր ժամանակ չէին կորցնում, իսկ հանգստի ընդմիջումները լինում էին կարճատև։ Օրը մթնում էր, բայց աշխատանքը արտերում չէր դադարում։ Եվ այսպես աշխատանքային օրը ավարտեցինք գրաֆիկը գերակատարած։

Իմ հետագա զրույցների ընթացքում հնձվորներին պարզաբանեցի աշխատանքը բարձր որակով կատարելու, կորուստների դեմ պայքարելու անհրաժեշտ նախապայ-



մանները։ Զրույցներից մեկը նվիրեցի առաջավորների փորձի տարածմանը։ Ճիշտ է, բրիգադի բոլոր հնձվորները կատարում էին նորմաները, բայց նրանց մեջ կային նաև այնպիսիները, որոնք նորմաները գերազանցում էին կրկնակի չափով։ Օրինակ, կոլտնտեսուհի ընկ. Լենա Ղարիբյանը օրական երկու նորմայից պակաս չէր կատարում։ Ընդմիջումի պահին իմ զրույցներից մեկը նվիրեցի այդ առաջավոր հնձվորուհու փորձի պարզաբանմանը։ Շատ կոլտնտեսականներ և կոլտնտեսուհիներ, ինչպես օրինակ Լենա Զաքարյանը, Զաբել Եղիազարյանը և ուրիշներ, խոսք տվեցին հավասարվել Լ. Ղարիբյանին։ Հաջորդ օրերին աշխատանքի տեմպը բրիգադում ավելի ուժեղացավ. շատ հնձվորներ սկսեցին մեկ ու կեսից-երկու արտադրական նորմա կատարել։

Իմ առաջնակարգ պարտականություններից մեկը ես համարում եմ սոցիալիստական մրցության ծավալումը։ Բերքահավաքը սկսելուց առաջ, իմ օգնությամբ բրիգադի անդամները սոցիալիստական մրցության պայմանագրեր գրեցին և խոստացան արտադրական նորմաները ամեն օր գերակատարել։ Հաճախ ամփոփում էինք մրցության արդյունքները, լուսաբանում «ֆլյաշովկա»-նե-

րում։ Աշխատանքի այդ ձևը մեծ աշխուժություն էր առաջ բերում բրիգադի անդամների միջև։ Ամեն մեկը ձգտում էր առաջավոր դառնալ։ Դրա շնորհիվ բրիգադում ստեղծվել էր աշխատանքային ընդհանուր վերելք։ Նախատեսված 4 հեկտարի փոխարեն բրիգադը օրեկան հնձում էր 6 հեկտարից ոչ պակաս տարածություն։ Հնձված բոլոր դաշտերում կազմակերպեցինք հասկահավաք։ Այդ գործը հանձնարարեցինք պատանիներին։

Պարտիական կազմակերպության հանձնարարությամբ բրիգադում աշխույժ զրույց կազմակերպեցինք հացամթերումները ժամկետից առաջ ավարտելու մասին։ Իմ կարճատև խոսքից հետո կոլտնտեսականները արտահայտեցին իրենց ցանկությունները և արժեքավոր առաջարկություններ արին։ Այստեղ հայտնի դարձավ, որ բերքի կալսման տեմպը հետ է մնում հնձի ընթացքից։ Պարզվեց, որ բերքի փոխադրումը դաշտից այնքան էլ արագ չի կատարվում։ Որոշեցինք այդ ուղղությամբ գործնական քայլեր անել։ Բերքը փոխադրող սայլապանների հետ ես ունեցա մի կարճատև զրույց. նրանց պարզաբանեցի՝ եթե բանող անասուններին լավ կերակրեք ու լավ խնամեք և հետո աշ-



խատանքային ժամերը լրիվ օգտագործեք, ապա հնարավոր կլինի նախատեսված երկու սայլի փոխարեն օրեկան փոխադրել երեք սայլ բերք։ Հաղորդեցի նաև, որ կալերում մենք ունենք երկու կալսիչ մեքենա, որոնք լրիվ բեռնվածությամբ չեն աշխատում՝ խրձերը ժամանակին չփոխադրելու պատճառով։ Որպեսզի սայլապաններին գործնականում համոզեմ իմ խոսքերի ճշմարտության մեջ, ես նույնպես անցա փոխադրման աշխատանքի։Հենց առաջին օրից սկսած օրական փոխադրում էի երեք սայլ բերք։ Սայլապանները համոզվեցին և այսպիսով գործը առաջ գնաց։ Բերքի փոխադրման տեմպը արագացավ։ Առհասարակ ես իմ զրույցը շաղկապում եմ իմ անձնական աշխատանքի հետ։ Լինելով հնձվոր, ես օրական կատարում էի մեկ ու կես նորմայից ոչ պակաս, իսկ այս շատ կարևոր հանգամանք է, որպեսզի ագիտատորը բարձր հեղինակություն ունենա իր ունկնդիրների շրջանում։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը մեծապես օգնեց բերքահավաքին։ Մեր բրիգադը ավելի քան 200 հեկտար տարածության հունձն ավարտեց ժամկետից 10 օր շուտ։ Մեր կոլտնտեսությունը պատվով կա-

*տարեց իր պարտավորությունը հարազատ պետության հանդեպ, ժամկետից առաջ ավարտելով հացամթերումները։*

*Եղվարդի կոլտնտեսականները այս տարի իրենց դաշտերից հարուստ բերք են հավաքում և իրենց ազնիվ և անդուլ աշխատանքի դիմաց կստանան առատ վարձատրություն։*

*Թ. ՂՈՒԿԱՍՅԱՆ*

Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի կոլտնտեսության *№ 14* բրիգադի ագիտատոր

---



# ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

*Ամերիկայի Միացյալ Նահանգները կապիտալիզմի գլխավոր երկիրն են։*

*Վ. Ի. Լենինը ամերիկյան իմպերիալիզմը բնութագրել է որպես «ամենագազանային, ցինիկ դիշատչի, որ պատրաստ է ավերել հարյուր միլիոնավոր մարդկանց» (Երկեր, հ. 29, 4-րդ հրատ., էջ 47)։*

*Ամերիկյան իմպերիալիզմի գիշատիչ, թալանչիական բնույթն առանձնահատուկ ուժով դրսևորվում է այժմ, համաշխարհային երկրորդ պատերազմից հետո։ ԱՄՆ-ը ներկայումս գլխավորում է իմպերիալիստական, հակադեմոկրատական ճագերը։ Ամերիկյան իմպերիալիզմը համաշխարհային տիրապետության է ձգտում, նա պայքարում է սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ուժերի դեմ։*

***

Ընդհանուր տեղեկություններ երկրի մասին: *ԱՄՆ-ը գտնվում է Հյուսիսային Ամերիկայում։ Տարածվելով Ատլանտյան օվկիանոսից մինչև Խաղաղ օվկիանոսը, ԱՄՆ-ը հյուսիսում սահմանակցվում է Կանադայի, իսկ հարավում Մեքսիկայի հետ։*

Իր տերիտորիայով (7,8 միլիոն քառակուսի կիլոմետր) ԱՄՆ-ը մոտ երեք անգամ փոքր է ՍՍՌՄ-ից և զիջում է այնպիսի երկրների, ինչպիսիք են Չինաստանը, Կանադան, Բրազիլիան։

Վարչական տեսակետից ԱՄՆ-ի տերիտորիան բաժանվում է 48 նահանգների և Կոլումբիայի ֆեդերալ օկրուգի։ Առավել կարևոր նահանգներն են՝ Նյու-Յորքը, Պենսիլվանիան, Մասաչուսեթսը, Օգայոն, Միչիգանը, Իլլինոյսը— հյուսիս-արևելքում, Վիրգինիան, Հյուսիսային Կարոլինան, Հարավային Կարոլինան, Ֆլորիդան, Ալաբաման, Միսիսիպին, Տեխասը— հարավում, Կալիֆորնիան— արևմուտքում և այլն։ ԱՄՆ-ի մայրաքաղաքն է Վաշինգտոնը։

**Բնական պայմանները:** Երկրի արևմուտքում բարձրանում են Կորդիլյերի լեռնաշղթաները։ Նրանցից դեպի արևելք, մինչև Ապալաչյան լեռները, ընկած են գյուղատնտեսության համար պիտանի ընդարձակ հարթություններ— Միսիսիպի գետի ավազանում։ Կլիմայական պայմանները թույլ են տալիս զարգացնել ոչ միայն գյուղատնտեսական այնպիսի կուլտուրաներ, որոնք աճում են չափավոր գոտում, այլև բամբակ, ծխախոտ, մերձարևադարձային պտուղներ (երկրի հարավ-արևելքում և Կալիֆորնիայում)։

ԱՄՆ-ը իր տերիտորիայում ունի հիմնական օգտակար հանածոների՝ քարածխի, նավթի, երկաթի, պղնձի, ցինկի, կապարի, ծծմբի և ֆոսֆորիտի զգալի պաշարներ։ Քարածխի հանույթի գլխավոր հանքա-



վայրը Մեծ Ապալաչի ավազանն է (Պենսիլվանիա, Արևմտյան Վիրգինիա և այլ նահանգներ)։ Նավթի ամբողջ հանույթի երեք հինգերորդականը տալիս է հարավ-արևմուտքը (Տեխաս, Օկլահոմա նահանգներ), իսկ մեկ հինգերորդականը՝ Կալիֆորնիան։ Գունավոր մետաղների հանույթը կատարվում է գլխավորապես լեռնային նահանգների տերիտորիայում՝ երկրի արևմուտքում։

Ընդերքի հարստությունները, ինչպես նաև երկրի բնական մյուս հարստությունները, տնօրինում են կապիտալիստական մոնոպոլիաները՝ իրենց շահամոլական նպատակներով։ Անտառների մեծ մասը կտրտված-ոչնչացված է. շարքից ամենևին հանված է երբեմնի արգավանդ 112 միլիոն հեկտար հողամաս։

**Բնակչությունը:** Մարդահամարի տվյալներով ԱՄՆ-ի բնակչությունը 1950 թվականի սկզբներին կազմում էր 150,7 միլիոն մարդ։

ԱՄՆ-ի բնակչության կազմավորման գործում մեծ դեր է խաղացել իմիգրացիան՝ ուրիշ երկրներից դեպի ԱՄՆ կատարված ներգաղթը։ Գաղթականների մեծ մասը տվել են այնպիսի երկրներ, ինչպիսիք են Մեծ Բրիտանիան, Իռլանդիան, Գերմանիան, Իտալիան, Ավստրո-Հունգարիան, ցարական Ռուսաստանը։ Սլավոնական երկրներից դուրս եկածների թիվը ներկայումս ԱՄՆ-ում հասնում է 15 միլիոն մարդու, որը կազմում է նրա ամբողջ բնակչության մոտ 10 տոկոսը։

ԱՄՆ ներգաղթած աշխատավորները հույս ունեին, թե այնտեղ ավելի լավ կյանք կգտնեն, բայց դրա փոխարեն սարկական շահագործում գտան։

20-րդ դարի երեսնական թվականներից, բազմամիլիոն գործազրկության պայմաններում, ներգաղթածների մուտքը խիստ կրճատվեց։ Նորը և աշխատավորների ծանր դրության համար չափազանց ցուցանշականը՝ երկրում արտագաղթի (ԱՄՆ-ից մեկնողների) աճման փաստն է։

Հարավի պլանտացիաներում և ամերիկյան մեծ քաղաքների հետնաբակերում բացառիկ ծանր պայմաններում ապրում են 15 միլիոն նեգրեր՝ սերունդներն այն ստրուկ նեգրերի, որոնք մինչև անցյալ դարի կեսերը բերվել են Աֆրիկայից։

Ամերիկյան իմպերիալիզմը ռասայական ցնդաբանություններ է տարածում նեգրերի մասին՝ որպես «ստորին արարածների», և գազանաբար ճնշում է նրանց։ Նեգրերն ԱՄՆ-ում փաստորեն զրկված են քաղաքական ու տնտեսական իրավունքներից։ Աղքատությունն ու թշվառությունը նրանց հեշտությամբ զոհ է դարձնում այնպիսի հիվանդությունների, ինչպիսիք են տուբերկուլոզը, պելլագրան և այլն։ Հետպատերազմյան շրջանում ԱՄՆ-ում ռեակցիայի խրախճանքին ուղեկցում է նեգրերի դրության ավելի ու ավելի վատթարացումը։ Իր գործունեությունն ակտիվացրել է խոշոր բուրժուազիայի կողմից առատորեն ֆինանսավորվող Կու-կլուքս-կլան տեռորիստական



ֆաշիստական կազմակերպությունը։ Ավելի հաճախակի են դարձել նեգրերի հետ գազանային դատաստաններ տեսնելու այնպիսի փաստերը, որոնք վրդովմունք են առաջ բերում ամբողջ առաջադեմ մարդկության կողմից։

Երկրի բնիկ բնակչության մնացորդները՝ հնդիկները, դատապարտված են սովամահության և հիվանդությունների՝ իրենց հատկացված ամայի շրջաններում, այսպես կոչված՝ «ռեզերվացիաներում»։ Չափազանց ծանր դրության մեջ են գտնվում նաև ԱՄՆ-ում ապրող մեքսիկացիները, չինացիները և ֆիլիպինցիները։ Ամերիկյան բուրժուազիան, ձգտելով խանգարել աշխատավորների միավորմանը, մի ազգային խումբը գրգռում է մյուս ազգային խմբի դեմ, «բնիկ» ամերիկացիներին հակադրում է ներգաղթածներին, սպիտակամորթներին՝ սևամորթներին։ Այդ քաղաքականությունը գնալով ավելի ուժեղ հակահարվածի է հանդիպում երկրի առաջադեմ ուժերի կողմից, որոնք իրավամբ այդ քաղաքականության մեջ տեսնում են մարդատյաց ֆաշիզմի դեմքը։

Բնակչության, ինչպես և տնտեսության տեղաբաշխումը երկրի տերիտորիայում կատարվել է չափազանց անհավասարաչափ։ Քաղաքային բնակչությունը կազմում է 56 տոկոս։ Խոշոր քաղաքների մեծ մասը գտնվում է երկրի հյուսիսում, տնտեսապես առավել զարգացած շրջանում։ Խոշոր քաղաքների թիվն են

պատկանում՝ Նյու-Յորքը (7,5 միլիոն մարդ), Չիկագոն (3,4 միլիոն), Ֆիլադելֆիան (1,9 միլիոն), Դետրոյտը (1,6 միլիոն)։ Հինգերորդ՝ «գերմիլիոնանոց» քաղաքը Լոս-Անջելոսն է (1,5 միլիոն), որը գտնվում է արևմուտքում, Կալիֆորնիա նահանգում։

Նյու-Յորք քաղաքը ԱՄՆ-ի կարևորագույն նավահանգիստն է, ֆինանսական, առևտրական և ինդուստրիալ կենտրոնը։ Այստեղ, Ուոլ-Ստրիտ փողոցի վրա և նրա շրջակայքում են գտնվում ամերիկյան գլխավոր բանկերն ու արդյունաբերական կորպորացիաները, որոնց վերահսկում են այն ամենաուժեղ մոնոպոլիաները, որոնց ձեռքին է գտնվում փաստորեն երկրի իշխանությունը։ Ըստ էության Ուոլ-Ստրիտի պարագլուխների շահերով է որոշվում ամերիկյան կառավարության ներքին և արտաքին ամբողջ քաղաքականությունը։

Ի տարբերություն Լոնդոնի և Փարիզի, ԱՄՆ-ի մայրաքաղաքը՝ Վաշինգտոնը ոչ երկրի ամենախոշոր քաղաքն է, և ոչ էլ առևտրա-ֆինանսական ու արդյունաբերական կենտրոնը։ Վաշինգտոնը դա արհեստականորեն ստեղծված վարչական կենտրոն է, որտեղ և գտնվում են պետական կառավարման բոլոր կարևորագույն օրգանները։ Ռազմա-բյուրոկրատական ապարատի ուռճացումը վերջերս հանգեցրել է Վաշինգտոնի բնակչության թվի զգալի աճմանը, որն այժմ հասնում է մոտ մեկ միլիոնի։



***

Էկոնոմիկան։ ԱՄՆ-ը ինդուստրիալ-ագրարային երկիր է։ Գյուղատնտեսությունը թեպետ և ունի կարևոր նշանակություն, սակայն նա թե՛ զբաղված բնակչության թվով, և թե՛ արտադրանքի արժեքով, զիջում է արդյունաբերությանը։

ԱՄՆ-ը տնտեսական տեսակետից բարձր զարգացում ունեցող կապիտալիստական երկիր է։ Այնտեղ է կենտրոնացած կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության մի զգալի մասը։ ԱՄՆ-ի տնտեսական գլխավոր լծակները գտնվում են խոշոր մոնոպոլիստական միավորումների՝ կորպորացիաների ձեռքում։ Մի այնպիսի կարևոր ճյուղում, ինչպիսին սև մետալուրգիան է, ամբողջ արդյունաբերության երեք հինգերորդականն իրենց ձեռքումն են պահում չորս ընկերություններ։ Դրանցից խոշորագույնը՝ Պողպատի կորպորացիան, որի տերն ու տնօրենը միլիարդատեր Մորգանն է, տալիս է երկրում արտադրվող սև մետաղների 40 տոկոսը։ Ավտոմոբիլային արդյունաբերության մեջ ամբողջ արտադրության ավելի քան 80 տոկոսը պատկանում է երեք ընկերությունների, այն է՝ «Ջեներալ-մոտորս», «Ֆորդ» և «Կրայսլեր» ընկերություններին։ Երեք ընկերություններ տիրում են ամբողջ ալյումինի արդյունաբերությանը։ Մոտավորապես նույն պատկերն է նկատվում երկրի տնտեսական կյանքի նաև բոլոր մյուս բնագավառներում։

Բանկերը, արդյունաբերական, տրանսպորտային, գյուղատնտեսական կորպորացիաները ենթարկված են մի բուռ միլիարդատերերի— մորգաններին, ռոկֆելլերներին, դյուպոններին, միլլոններին՝ ժամանակակից ստրկատերերի «60 ընտանիքներին»։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումն ու սրումը իր արտահայտությունն է գտնում, մասնավորապես, պորտաբուծության հսկայական ուժեղացման և ամերիկյան էկոնոմիկայի նեխման մեջ։ Նույնիսկ այսպես կոչված «բարգավաճման» տարիներին, օրինակ 1929 թվականին, անօգտագործելի մնաց ամերիկյան արդյունաբերության արտադրական կարողությունների մեկ հինգերորդը։ Մասսայական գործազրկությունը, որ թշվառության է մատնում ամերիկյան միլիոնավոր աշխատավորների, առաջին համաշխարհային պատերազմից հետո դարձել է ԱՄՆ-ի կյանքի մի անբաժան բնորոշ գիծը։ Տնտեսական ճգնաժամերը առանձնահատուկ ուժով են ցնցում կապիտալիզմի այդ գլխավոր երկիրը և ամենախոր անկման հասցնում նրա ամբողջ տնտեսությունը։ Համաշխարհային երկու պատերազմների միջև ընկած ժամանակաշրջանում տնտեսական ճգնաժամերը երեք անգամ, այն է՝ 1920—1921 թվականներին, 1929—1933 թվականներին և 1937—1938 թվականներին, խիստ իջեցրել են երկրի արտադրության մակարդակը։ Հատկապես ուժեղ և կործանարար էր 1929—1933 թվականների ճգնաժամը երբ ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրությունը կր-



ճատվեց կիսով չափ, իսկ գործազուրկների քանակը հասավ 17 միլիոն մարդու։ Խաղաղ պայմաններում ԱՄՆ-ի էկոնոմիկան շարունակ իր վրա զգում է ավելի ու ավելի ծանր և երկարատև ճգնաժամերի հարվածներ։ Քիչ տարիներ են պատահում, որ արտադրությունն աճ ունենա, այն էլ լինում է անկայուն և դանդաղ աճ։

Իր զարգացման տեմպով ամերիկյան էկոնոմիկան ոչ մի կերպ չի կարող համեմատվել ՍՍՌՄ-ի պլանային, ճգնաժամերից զերծ, սոցիալիստական էկոնոմիկայի հետ։ Արդյունաբերական արտադրանքի 20 տարվա (1929—1949) միջին տարեկան աճը ՍՍՌՄ-ում կազմեց 20 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 2 տոկոս։ 1929 թվականի համեմատությամբ, 1949 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալը ՍՍՌՄ-ում կազմեց 862 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում՝ միայն 159 տոկոս։

Համաշխարհային առաջին պատերազմից հետո Վ. Ի. Լենինն ասում էր, որ կապիտալիստական երկրների արդյունաբերությունը «կամ շնչահեղձ է լինում և ստեղծում գործազրկություն ամենաբարգավաճ և հարուստ հաղթող երկրներում, կամ անում է միայն այն, որ արկեր է արտադրում մարդկանց ոչնչացնելու համար» (Երկեր, հ. 33, էջ 134, 4-րդ հրատ.)։

Ամերիկյան էկոնոմիկայի նեխման ամենացայտուն արտահայտությունն է այն, որ ԱՄՆ-ում արտադրու-

թյան աճը գլխավորապես կախված է սպառազինության մրցավազքից և պատերազմներից։

1937 թվականին ԱՄՆ-ում ծայր առած տնտեսական ճգնաժամն ընդհատվեց սկսված համաշխարհային երկրորդ պատերազմի շնորհիվ, մի պատերազմ, որի հրահրման գործում ամենաակտիվ դեր խաղաց ամերիկյան իմպերիալիզմը։ 1943 թվականին ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը ավելի քան երկու անգամ աճեց՝ 1939 թվականի համեմատությամբ։ Արտադրության այդ ընդլայնումը միակողմանի բնույթ ուներ. զարգանում էր ռազմական արդյունաբերությունը՝ ի վնաս քաղաքացիականի։ Ռազմական մատակարարումները վիթխարի շահույթներ բերին մոնոպոլիստներին։ Պատերազմի ժամանակ նրանց տարեկան միջին եկամուտն աճեց ավելի քան երկու անգամ՝ նախապատերազմյան տարիների հետ համեմատած։

ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրությունն սկսեց կրճատվել դեռ նախքան պատերազմի ավարտումը։ 1946 թվականի սկզբներին ամերիկյան արդյունաբերության արտադրանքը մեկ երրորդով պակաս էր, քան 1943 թվականին։ Այնուհետև տեղի ունեցավ մի կարճատև վերելք, որը տնտեսական նոր անկման փոխարկվեց։ 1948 թվականի հոկտեմբերից մինչև 1949 թվականի հոկտեմբերը ԱՄՆ-ում 22 տոկոսով կրճատվեց արդյունաբերական արտադրությունը։ Լրիվ և մասնակի գործազուրկների բանակն անցյալ տարվա



սկզբին հասավ 18 միլիոն մարդու։ Արդյունաբերական արտադրության հետագա կրճատումն արգելակվեց սպառազինության այն կատաղի մրցավազքով, որին դիմեցին կառավարող շրջանները՝ ամերիկյան իմպերիալիստների թելադրանքով։

«Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցում ընկեր Ստալինը մատնանշեց, որ «...երկրի զինված ուժերի բազմապատկումը և սպառազինությունների մրցավազքը տանում են դեպի ռազմական արդյունաբերության ծավալումը, դեպի քաղաքացիական արդյունաբերության կրճատումը, դեպի քաղաքացիական մեծ կառուցումների կանգնեցումը, դեպի հարկերի բարձրացումը, դեպի մասսայական սպառման ապրանքների գների բարձրացումը»։

Հենց այդ էլ տեղի է ունենում ներկայումս ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և մյուս կապիտալիստական երկրներում։

Ամերիկայի Միացյալ Նահանգների ռազմական ծախսերն ընթացիկ ֆինանսական տարում կազմում են մոտ 68 միլիարդ դոլար և ավելի քան 60 անգամ շատ են 1939 թվականի ռազմական ծախսերից։

ԱՄՆ-ի զինված ուժերի թվական կազմը միայն վերջին տարում ավելացավ երկու անգամ և 1951 թվականի մարտի 21-ին հասնում էր 2 միլիոն 900 հազար մարդու։

Մոնոպոլիստներն իրենց ձեռքն են գցել խոշոր ռազմական պատվերներ։ ԱՄՆ-ի էկոնոմիկայի փոխա-

դրումը ռազմական ռելսերի վրա՝ առանձնապես արագացվեց այն պահից, երբ սկսվեց ամերիկյան ինտերվենցիան Կորեայում։ 1950 թվականի հունիսից սկսած, 8 ամսում, միայն պաշտպանության մինիստրությունը (այսպես է կոչում իրեն ամերիկյան ռազմամոլների գլխավոր շտաբը) 19,7 միլիարդ դոլլարի ռազմական պատվերներ տվեց։

Դրա հետ միասին անընդհատ կրճատվում է քաղաքացիական արդյունաբերությունը։ Պակասեցվում է տնային գործածության առարկաների, տեքստիլեղենի թողարկումը։ 1951 թվականին նախատեսված է 40 տոկոսով ևս կրճատել բնակարանային շինարարությունը, որն առանց այն էլ չնչին է։ Քաղաքացիական արդյունաբերության արտադրության խոշոր կրճատման հետևանքով աճում է գործազրկությունը։

Շարունակ աճող ռազմական ծախսերը մի ծանր բեռ է, որ ընկած է ամերիկյան աշխատավորության ուսերին։

1950 թվականի հոկտեմբերին ավելի քան 20 տոկոսով բարձրացան բնակչության հիմնական, ցածր վարձատրություն ստացող մասսայի վաստակների վրա դրվող հարկերը։ 1951 թվականը բերեց հարկերի նոր բարձրացում։ ԱՄՆ-ի աշխատավորները ներկայումս 8 անգամ ավելի շատ հարկ են տալիս, քան պատերազմից առաջ։ 1950 թվականին պարենային ապրանքների մանրածախ գները բարձրացվեցին 24 տոկոսով, 1951 թվականին շարունակվում է գների բարձրացումը։ Այս



ամենն առաջ է բերում աշխատավորների էլ ավելի աղքատացում։

Դրա փոխարեն վիթխարի շահույթներ են կորզում մոնոպոլիստները. 2213 ամենախոշոր կորպորացիաներ 1950 թվականին 22 տոկոսով շատ շահույթ են ստացել, քան 1949 թվականին։ Նույն ժամանակամիջոցում հարյուր միլիոն դոլլարով աճեցին ռազմաքիմիական արդյունաբերության «արքա» Դյուպոնի (նրան են հանձնարարվել ատոմային ռումբերի արտադրության հիմնական աշխատանքները) շահույթները. 50 միլիոն դոլլարով ավելացան պողպատի մորգանյան կորպորացիայի շահույթները։

***

ԱՄՆ-ի գյուղատնտեսության մեջ գերակշռում են՝ ցորենի, եգիպտացորենի, բամբակի, ծխախոտի արտադրությունը, անասնապահական մթերքները։

Գյուղատնտեսական արտադրանքի մեծ մասը տալիս են կապիտալիստական խոշոր ֆերմաները, թեև դրանց թիվը համեմատաբար շատ քիչ է։ 25 հազար այդպիսի ֆերմաներ երկու անգամ շատ արտադրանք են տալիս, քան 3 միլիոն մանր ֆերմաներ, որոնք կազմում են ԱՄՆ-ի բոլոր ֆերմաների ավելի քան կեսը։ Ժամանակակից մեքենայիզացիան մատչելի է միայն կապիտալիստական խոշոր ֆերմաներին։ Աղքատ վարձակալների քայքայման և հողից քշվելու հետևանքով, 1935—1945

թվականներին ԱՄՆ-ում մոտ մեկ միլիոնով կրճատվեց ֆերմաների թիվը։

Քայքայման և աղքատացման պրոցեսն ընդգրկել է երկրի միլիոնավոր գյուղական բնակիչների։

1948 թվականին սենատի գյուղատնտեսական հարցերի ենթահանձնաժողովը հարկադրված էր խոստովանել, որ ամերիկյան ֆերմաների 43 տոկոսը, այսինքն՝ ավելի քան 2,5 միլիոն տնտեսություններ, խղճուկ գոյություն են քարշ տալիս։ Ենթահանձնաժողովի հաշվետվության մեջ ասված է. «Այդ ֆերմաների արտադրանքն օգտագործվում է գլխավորապես անձնական սպառման համար, ճիշտ ցանքաշրջանառությունների բացակայությունն ուժասպառ է անում առանց այն էլ սակավ արգավանդ հողը, ընտանիքները վատ են սնվում և հագնվում, ապրում են սոսկալի բնակարանային պայմաններում. երեխաների մահացությունը չափազանց բարձր է, խիստ տարածված են հիվանդությունները»։

Ֆերմերներին թալանելու գործում մեծ դեր են խաղում գյուղատնտեսական մթերքների վաճառահանության և վերամշակման ընկերությունների բանկերը, մեքենաներ և պարարտանյութեր արտադրող ընկերությունները։ Ամերիկյան իրականության համար սովորական երևույթ է՝ պարտքերը չմարած ֆերմաներն աճուրդով վաճառելը։ Անընդհատ կրճատվում են աշխատավոր ֆերմերների եկամուտները. 1950 թվականին նրանց եկամուտները մեկերրորդով քիչ էին, քան



1947 թվականին։ Քաղցն ու թշվառությունն ավելի ու ավելի շատ ֆերմերների բաժին են դառնում։

Տնտեսական կրիզիսի տարիներին ամերիկյան կառավարությունը հաճախ հարկադրաբար կրճատել է տալիս գլխավոր կուլտուրաների ցանքատարածությունը։ Տարեց-տարի կրճատվում է անասունների գլխաքանակը։ Այսպես օրինակ. 1944 թվականից մինչև 1949 թվականը խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ԱՄՆ-ում պակասել է մոտ 10 տոկոսով։ Ոչխարների գլխաքանակը, 1938 թվականի համեմատությամբ, պակասել է ավելի քան մեկ երրորդի չափով։

ԱՄՆ-ի նեխող կապիտալիստական էկոնոմիկայի համար սովորական երևույթ է դարձել գյուղատնտեսական մթերքների մասսայաբար ոչնչացնելը։ Այդ բարբարոսական միջոցառումն անց է կացվում կապիտալիստական խոշոր ֆերմերների շահերի համար, այն նպատակով, որ արհեստականորեն պահպանվեն բարձր գները։ Ամերիկյան «Կոլերս» ժուռնալի տվյալներով՝ ԱՄՆ-ի կառավարությունը միայն կարտոֆիլ գնելու և ոչնչացնելու համար վերջերս ծախսել է 500 միլիոն դոլլար։ Սպառողները կրկնակի են տառապում՝ մեկ գների թանկացումից, մեկ էլ հարկերի ավելացումից— գյուղատնտեսական արտադրանքի «ավելցուկների» գնումը կատարվում է պետական միջոցներով, այսինքն՝ հարկատուների հաշվին։ «Պետք է ընդունել,— ասել է ընկեր Ստալինը,— որ տնտեսության այն սիստեմը, որը չգիտի, թե ինչ պետք է

անի իր արտադրության «ավելցուկը» և որն ստիպված է այն այրել, մի այնպիսի ժամանակ, երբ մասսաների մեջ թագավորում են կարիքն ու գործազրկությունը, սովն ու ավերածությունը,— տնտեսության այդպիսի սիստեմն ինքն է իր մահվան դատավճիռը կարդում»։

***

«Ամերիկյան բանվորներին» վերնագրով իր նամակում Լենինն ընդգծում է այն բացառիկ անդունդը, որն ընկած է մի բուռ միլիարդատերերի և ամերիկյան միլիոնավոր աշխատավորների միջև, «որոնք հավերժ ապրում են աղքատության եզրին»։ Համաշխարհային երկրորդ պատերազմի նախօրյակին ԱՄՆ-ի ամբողջ ազգային եկամտի մոտ 56 տոկոսը յուրացնում էր կապիտալիստների մի չնչին խումբը։ Դրանից հետո էլ ավելի մեծ չափեր է ընդունել հարստության կուտակումը պորտաբույծ վերնախավի ձեռքում։ Անգամ բուրժուական վիճակագրությունը հարկադրված է խոստովանել, որ Ամերիկայի բնակչության ավելի քան 70 տոկոսը զուրկ է ապրուստի նվազագույն միջոցներից, ապրում է կիսաքաղց։

Ամբողջ տարին երկրի ճանապարհները լիքն են միլիոնավոր ընչազուրկներով, որոնք թափառում են նահանգից-նահանգ՝ որևէ, թեկուզ պատահական վաստակ գտնելու համար։ Բացառիկ ծանր բնակարանային պայմաններում են գտնվում ամերիկյան աշխատավորները՝ բնակչության մեկ երրորդ մասը ապրում է հետնաբակերում, զուրկ է ամենատարրական հարմարություններից։ Ամերիկյան բանվորները հարկադրված են խղճուկ բնակարանի համար տնատերերին վճարել իրենց աշխատավարձի 25—40 տոկոսը։



Հիվանդությունների հսկայական չափով տարածման պայմաններում՝ ԱՄՆ-ի աշխատավորության լայն մասսաների համար փաստորեն անմատչելի է բժշկական օգնությունը։ Բուժման գործը գտնվում է մասնավոր անձանց՝ կապիտալիստների ձեռքում և հարստացման միջոց է հանդիսանում։ Բժշկի խորհուրդը և դեղորայքը չափազանց թանկ արժեն։ Հիվանդանոցում 30 օր պառկելու համար պետք է վճարել 1—3 հազար դոլլար, մի գումար, որը հավասար է բանվորի մոտ մեկ տարվա աշխատավարձին։ Դրան անհրաժեշտ է ավելացնել և այն, որ ԱՄՆ-ի շրջանների 40 տոկոսը հիվանդանոցներ չունեն ամենևին։

Վիթխարի միջոցներ ծախսելով սպառազինության մրցավազքի և ագրեսիվ պատերազմի նախապատրաստման համար, ԱՄՆ-ի կառավարող շրջանները չնչին գումարներ են հատկացնում ժողովրդական լուսավորությանը ։ ԱՄՆ-ի 1950—1951 թվականների պետական բյուջեով լուսավորության ծախսերը կազմում էին ընդամենը մեկ տոկոս, բայց հետո այդ չնչին գումարն էլ կրճատվեց։ Ամերիկյան ժուռնալիստ է. Կոնրադը իր վերջերս լույս

տեսած «Դպրոցի խայտառակ վիճակը» գրքում նշում է, որ Ամերիկայի կառավարությունը կրթության համար 300—500 անգամ քիչ միջոցներ է բաց թողնում, քան պատերազմի պատրաստման համար։

Բավարար քանակությամբ դպրոցներ և ուսուցիչներ չլինելու պատճառով, ինչպես նաև գոյության անհրաժեշտ միջոցներ հայթայթելու գործով զբաղված լինելու պատճառով, 1948 թվականին ԱՄՆ-ում դպրոցներից դուրս է մնացել 6 միլիոն երեխա՝ դպրոցահասակ երեխաների ընդհանուր թվի մեկ հինգերորդական մասը։ Երկրում անգրագետների և կիսագրագետների թիվը քսան միլիոնից անց է։

Այս է «ամերիկյան ապրելակերպը», որը քաղցի և թշվառության, մահվան ու տգիտության է դատապարտում տասնյակ միլիոնավոր աշխատավորներին։

(Շարունակելի)

ՅՈՒ. ԿՈԼՈՍՈՎԱ
Աշխարհագրական գիտությունների թեկնածու

---

ՈՒՂՂՈՒՄ

«Ագիտատորի բլոկնոտ»-ի № 14-ի 2-րդ էջի 6-րդ տողը (ներքևից հաշված) կարդալ՝ «դեկտեմբերի 20-ին կատարելու համար»։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

